*չնչանց թէ Ֆրանսա հաւատարիմ կը մնայ իր կնքած դաշնագիրներուն, թէ օգնութեան պիտի հասնի, եթէ Չեխոսլովաքիա յարձակում կրէ Գերմանիայէն, թէ այլեւս փակուած պիտի չպահէ Սպանիոյ սահմանագլուխը, եթէ ձախողի ոչ - միջամտութեան քաղաքականութիւնը եւն.:*

**** Ժողովին որոշմագրութիւնները հանդստացնելու եւ երկու թեւերը հաշտեցնելու համար, Գ. Էռիօ հայրենասիրական կոչ մը ուղղեց ժողովրդական կանգուածներուն :*

*ԳԵՏԱԿԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՆԵՐՈՒ Միութիւնը որոշեց ցոյց մը սարքել Նոյեմբեր 4ին, իբրեւ ազդարարութիւն, ընդհատելով աշխատանքը: Նոյն օրը բոլոր պաշտօնեաները որոշ տեղ մը պիտի համախմբուին եւ մասնաւոր պատուիրակութիւններ բանաձեւ մը պիտի ներկայացնեն բոլոր գրասենեակներու վարիչներուն: Դիմում կատարուած է նաեւ քաղաքական կուսակցութեանց :*

*280.000 ՖՐԱՆՔԻ դոհարեղէն գողցուած է ցուցահանդէսի գերմանական տաղաւարէն: Քննութիւնները արդիւնքի մը չեն յանգած տակաւին:*

*ԵՐՈՒՍԱՂԷՄԷՆ կը հեռագրեն թէ խռովութիւնները կը շարունակուին անընդհատ: Նոր ստիկաններ զրկուեցան Երուսաղէմ :*





*Լիոնէն գրուած նամակ մը ցաւով կը տեղեկացնէ թէ ընկեր Ցակոբ Թուրքեան դժբախտութիւնն ունեցած է կորսնցնելու իր կինը՝ ՏԻԿԻՆ ՄԱԹԻԼՏ ԹՈՒՐՔԵԱՆ, (ծնեալ Սեթեան, Իզմիրցի), 27 տարեկան հասակին մէջ: Մահը տեղի ունեցած է Հոկտեմբեր 29ի առտուն, իբրեւ հետեւանք վիրաբուժական գործողութեան: Կը թողու այրի մայրը, ամուսինը եւ երեք զաւակներ, որոնց վերջինը՝ տասը ամսու :*

*ները, Տիգրան Նազարեանց՝ յանուն Հայ գրողներու:*

*1913ին, Թիֆլիսի մատուրականները յուշարձան մը կը կանգնեն Րաֆֆիի հողակոյտին վրայ,— Բուխ, քառակուսի պատուանդան մը, վրան՝ երեք կոթողներ, առաջին կոթողին վրայ քանդակուած է ՐԱՖՖԻ, ապա՝ ծն. 1888: Երկրորդ կոթողին վրայ, կիսր սիւն մը ծաղկահիւս գագաթով, քնար մը,— քնարին եռեր՝ Րաֆֆիի դէմքը իր լայն ձակատով: Երրորդ կոթողին վրայ, քառակուսի ճերմակ մարմարիոն մը, ճակատին՝ քանդակուած է հետեւեալ տունը Րաֆֆիի մէկ բերթուածէն.*

Բար է Իս սիրտը եւ խիղճը մեռած,
Բանի՞ արիւններ, քանի՞ կոտորած
Տեսար յոեցիր եւ դարձեալ պայծառ
Հայ երկնի վրայ կապում ես կամար:





***ՓՆՏՌԵՑԷՔ եւ ԿԱՐԴԱՑԷՔ*** *երգիծաթերթ՝ «Մ Ե Ղ Ո Ւ»* փարիզի եւ շրջանի Յառաջի՝ ... Գ Ա Ւ Ա Ռ Ի ...

## ԲԱՑՈՒԱԾ Է ԱՐԴԻԱԿԱՆ ԿԱՀԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ՀԱՅԿԱԿԱՆ ԱՌԱՋՆԱԿԱՐԳ ՃԱՇԱՐԱՆԸ



## Հ. Ց. Դ.

Դ-ՍԱՂԱԾ

ՄԱՐՍԷՅԼԻ Երք. կոմիտէն սախպողաքար ժողովի կը հրաւիրէ «Ռոստոմ» ենթակոմիտէի «Քրիստափոր», «Իշխան» եւ «Վահագն» խումբերու բոլոր ընկերները 4 նոյեմբեր, Հինգշաբթի երեկոյ ժամը 8ին, «Շահրիկեան» սրահին մէջ: Ներկայ պիտի ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը: Ա.յնատաձգելի օրակարգ :

*Այգ Ընկ. Ամբակում Պալիկեանի (Դաւիթեան) զերեզմանին*

*ԸՆԿԵՐ ԱՄԲԱԿՈՒՄԻ մահուան տարելիցին առթիւ Փարիզի Հ. Յ. Դ. «Եփրատացի» Կոմիտէն կազմակերպած է այց մը իր գերեզմանին, 1 Նոյեմբեր, Երկուշաբթի առաւօտ ժամը 9.30ին: Կը հրաւիրուին ընկերները ու բարեկամները ներկայ գտնուիլ որոշեալ ժամուն Փանթէն-Փարիզիէն գերեզմանատան* Porte Principaleի *առջեւ:*

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԿԵԱՆՔ. ԱՐՈՒԵՍՏ

*Ամսագրին 8րդ. թիւը (Հոկտեմբեր) ճոխ բովանդակութեամբ եւ նկարազարդ:*

*Բաժնեգինն է տարեկան Ֆրանսայի համար 30 ֆր.*

*Արտասահման՝* 40

*Դիմել* **M. BARSAMIAN 30 Rue Drouot. Paris (9(**





*Փարիզի եկեղեցիէն ստացանք հետեւեալ ազդը.*

ՓԱՐԻԶԻ Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ հոգեւոր իշխանութիւնը եւ անոր հետ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը, համախորհուրդ, կը յայտարարեն թէ այսօրկիրակի Ս. Պատարագ պիտի մատուցուի Ս. եկեղեցւոյս մէջ, մասնաւորապէս այն նորագիր զինուորցուներուն համար, որոնք յառաջիկայ երեքշաբթի օր կը մեկնին իրենց նշանակուած զօրագունդերը:

Հետեւաբար բոլոր այն կարգի զինուորցուները կը հրաւիրուին կիրակի օր ներկայ ըլլալ Ս. Պատարագի արարողութեանց եւ հոգեւորապէս եւս զինուիլ՝ մասնակցելով Ս. հաղորդութեան: Սկիզբ պատարագի ժամը 10ին:

×

Այսօր, կիրակի, Մարսէյլի Փրատոյի Ս. Սահակ-Մեսրոպ Մայր-եկեղեցիին մէջ տեղի կ'ունենայ ընթերցումը Հայրապետական նոր կոնդակի մը՝ ուղղուած Մարսէյլի եւ շրջակայքի Հայութեան եւ մասնաւորապէս Թաղային խորհուրդներուն:

Կը կատարուի նաեւ հոգեհանգստի պաշտօն՝ ողբացեալ Տ. Գրիգորիս եպիսկ. Պալագեանի յիշատակին, մահուան երրորդ տարելիցին առթիւ: Կը քարոզէ Պատուիրակ Սրբազանը, նիւթ ունենալով «Օրէնք, կարգապահութիւն եւ բարեկարգութիւն»:






















Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme, PARIS (13') Imprimerie A. DER (AGOPIAN)